# ԱՐՔԱՏԻ ՔՈՒԿԷԼ

## ԷՋԵՐ ԱԼՊՈՄԷՆ

եւ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՐ

դաշնակի համար

Գահիրէ

2000

# ARKADIE KOUGUELL

## DEUX PAGES D'ALBUM
## and
## DANSE ARMÉNIENNE
## for piano

**Edited and annotated**
**by**
**HAIG AVAKIAN**

**Cairo**

**2000**

# ԱՐՔԱՏԻ ՔՈՒԿԷԼ

## ԷՋԵՐ ԱԼՊՈՄԷՆ

եւ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՐ

դաշնակի համար

**Խմբագրութիւն եւ ներածութիւն՝**
**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

**Գահիրէ**

**2000**

# ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կու զանք խորին շնորհակալութիւնները յայտնելու Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան Գահիրէի մասնաճիւղի վարչութեան եւ իր յարգելի ատենապետ տիար Պերճ Թէրզեանին, որոնք յօժարութեամբ ընդունեցին եւ ամէն դիւրութիւն ընձայեցին տպագրելու այս աշխատութիւնը:

Շնորհակալութիւն՝ օր. Նուարդ Տամատեանին, որ տրամադրեց մեզի *Deux pages d'album*-ին ինքնագիր ձեռագիրը:

Շնորհակալութիւն՝ Արքատի Քուկէլի որդիին, Մօրիս Քուկէլին, այս հրատարակութեան թոյլտուութեան եւ հաղորդած անհրաժեշտ տեղեկութիւններուն համար:

Շնորհակալութիւն՝ բանասէր Տիգրան Գէորգեանին, լեզուական եւ խմբագրական դիտողութիւններուն համար:

Շնորհակալութիւն՝ տիար Մարտիրոս Պալաեանին, հրատարակչական վերահսկողութեան համար:

Հ. Ա.

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Հայկական երաժշտութիւնը յաճախ գրաւած է օտար երաժիշտներու ուշադրութիւնը: Արեւմտեան աշխարհին համար հայկական երաժշտութիւնը տարաշխարհիկ (exotique) գոյներու արտայայտիչ աղբիւր մըն է: Միքայէլ Իփփոլիթով-Իվանով (*Հայկական ռափսոտի* եւ *Կովկասեան սքէչներ,* նուագախումբի համար), Ճան Քարլօ Մալիբիէրօ (*Հայաստան,* դաշնակի համար), Թաթիանա Նազարովա-Մեթնէր (*Ստեղծագործութիւն հայկական թեմաներով,* դաշնակի համար) եւ ուրիշներ մեծապէս ներշնչուած են հայկական գեղջկական ու քաղաքային երաժշտութեան հիմնանիւթերէն (thème): Այս կարգի արուեստագէտներէն մէկն է Արքատի Քուկէլ, որ գրած է հայկական հիմնանիւթով երկու դաշնակի ստեղծագործութիւն՝ *Chanson arménienne* (*Հայկական երգ*) ձախ ձեռքի համար եւ *Danse arménienne* (*Հայկական պար*):

Դաշնակահար, երաժշտահան Արքատի Քուկէլ (1896–1985)՝ թէ մենանուագներով եւ թէ իբրեւ մենակատար նուագախումբի հետ, շրջագայած է Եւրոպայի, Միջին Արեւելքի եւ Միացեալ Նահանգներու մէջ: Ան հիմնադիրն ու առաջին տնօրէնն է Պէյրութի Ամերիկեան Համալսարանի Երաժշտական հիմնարկին: Եղած է Փարիզի École Normal de Musique-ի դասախօսական կազմին մէջ: Երկար տարիներ վարած է Նիւ Եորքի Երաժշտահաններու Խմբակի (Composers Group) փոխ նախագահի պաշտօնը: Քանիցս քննական յանձնաժողովի անդամ նշանակուած է Փարիզի, Ժընեւի եւ Թէլ-Աւիւի երաժշտանոցներուն մէջ: Հեղինակած է մեծ թիւով ստեղծագործութիւններ նուագախումբի, երգչախումբի, մեներգիչներու, լարային եւ փայտափողային կազմերու եւ դաշնակի համար: Գրած է շարժանկարներու երաժշտութիւն: Իր պալէն՝ *Legend of the Pearl*, յօրինած է Ուաշինկթընի Ազգային Պալէին պատուէրով եւ առաջին անգամ ըլլալով բեմադրուած 1966 Ապրիլ 23-ին: Քանթորի, խառն ձայներու եւ երգեհոնի համար գրած *Friday Evening Service* խորագիրով հոգեւոր քանթաթին առաջին կատարումը տեղի ունեցած է Նիւ Եորքի Էմանուէլ Տաճարին մէջ, 1967 Մայիսին: *Psalm XCVII*-ը պատուիրուած ու կատարուած է նոյն տաճարին կողմէ՝ 1969-ին: Իր ստեղծագործութիւններուն հրատարակութիւնը Նիւ Եորքի մէջ ստանձնած են Mercury Music Corporation, AM-CA Publishing Co եւ John Market Publishing Co., Փարիզի մէջ իր հրատարակիչները եղած են՝ Max Eschig, Durand, Gallet et Fils եւ Andrieu Bros.

Դաշնակահարի եւ երաժշտահանի բացառիկ գործունէութեան համար՝ Արքատի Քուկէլ ստացած է հետեւեալ մրցանակները.

-Միջազգային Կաճառին (International Academy) կողմէ՝ Star and Cross of Academic Honor.

-Ֆրանսական Հանրապետութեան կողմէ՝ Chevalier de l'Ordre de la République Française.

-Լիբանանի Հանրապետութեան կողմէ՝ Medal of Honor.

-Քալիֆորնիայի Հարբ Ընկերութեան (California Harp Association) կողմէ՝ տաւիղի եւ թաւջութակի համար յօրինած *Poems*-ին համար:

-Փարիզի Արուեստի Ընկերութեան կողմէ՝ սոփրանոյի եւ նուագախումբի համար յօրինած *Ballade*-ին համար[1]:

Ուսումնասիրելով մեր ձեռքի տակ գտնուող երկերը, կը կարծենք՝ թէ Քուկէլ անարդարօրէն չէ գտած միջազգային պատշաճ ճանաչում, եւ եթէ ապրած ըլլար ստեղծագործական աւելի բարենպաստ պայմաններու մէջ՝ ոչ նուազ հռչակաւոր կրնար դառնալ, քան Մորից Մոշքովսքի կամ Տմիթրի Քապալեւսքի:

Խօսքը մասնաւորելով դաշնակի ստեղծագործութիւններուն վրայ, նշենք՝ որ ան հեղինակած է սոնաթներ, սոնաթիններ, ռափսոտիներ, փրելիւտներ, *Thème et variations sur un air arabe* (***Փոփոխակներ արաբական հիմնանիւթով***), *Huit pièces en forme d'Études* (***Ութ ստեղծագործութիւն էթիւտի ձեւով***)՝ որ մաս կազմած է Փարիզի École Normal de Musique-ի ուսուցողական ծրագիրին, *15 Morceaux de genre,* վալս՝ *Parva sed apta,*

1.- Արքատի Քուկէլի կենսագրական տեղեկութիւնները մեզի հաղորդեց իր կրտսեր որդին՝ Մօրիս Քուկէլ: Վերջինս ջութահար (altiste) է, հոգեբանութեան եւ հոգեբուժութեան տոքթ. եւ փրոֆ., հեղինակը բազմաթիւ գիրքերու եւ յօդուածներու հոգեբանութեան բնագաւառին մէջ: Կարեւորագոյն հիմնարկներու կողմէ արժանացած է բազմաթիւ շքանշաններու եւ մրցանակներու: Բնակութիւն հաստատած է Նիւ Եորքի մէջ:

*Danse kurde* եւ այլն: Ըլլալով բացառիկ դաշնակահար, իր դաշնակի ստեղծագործութիւնները կը պահանջեն գեղարուեստական եւ արհեստավարժական (technique) բարձր վարպետութիւն: Անոնք կը բնորոշուին կըրքոտ, բոցավառ զգացումներով, մեծակերտ (monumental) արտայայտչականութեամբ, մերթ հրաբուխային խայտանքով: Սակայն Քուկէլ գիտէ չափաւորել իր զգացումները եւ իր խոյանքները հաւասարակշռել ներքին փափկութեամբ: Թէեւ զգացական աշխարհը ու դաշնակայնութիւնը (pianisme) ուշ վիպապաշտութիւնն է, սակայն դաշնակումային (harmonique) ու երաժշտական լեզուն կը ձգտի արտացոլել ժամանակակից միտումներ: Իր դաշնակի երկերուն վերագարթնումով երաժշտական գրականութիւնը պիտի յարգարուի մասնագիտացուած (professionel) բարձր մակարդակով օժտուած փայլուն գոհարներով, ուր դաշնակահարը պիտի գտնէ վիրթիւոզականութեան եւ բազմերանգ երաժըշտականութեան տպաւորիչ համաձուլուածք:

# DEUX PAGES D’ALBUM

1929 Թուականին, Պէյրութի Ամերիկեան համալսարանի նորաբաց Երաժշտական Հիմնարկի դաշնակի բաժանմունքին մէջ ուսանելու կ’ընդունուի Նուարդ Տամատեան՝ դուստրը անուանի հասարակական գործիչ ու մտաւորական Միհրան Տամատեանին, որ յետագային Եգիպտոսի մէջ մեծ հռչակ պիտի վայելէր իր մենահամերգներով եւ մանկավարժական բեղուն գործունէութեամբ[2]: Պէյրութի մէջ Ն. Տամատեանի դասատուն կ’ըլլայ Արքատի Քուկէլ: Ուսուցիչին եւ Տամատեան ընտանիքին միջեւ կը մշակուի մտերիմ յարաբերութիւն, որուն արդիւնքը կը հանդիսանայ Քուկէլի յօրինած երկու գողտրիկ ստեղծագործութիւնները՝ «Souvenir («Յուշ») եւ «Chanson arménienne» («Հայկական երգ»), ամփոփուած մէկ ընդհանուր խորագիրի՝ *Deux pages d’album*-ի մէջ: Անոնք յօրինուած են 1933 Յունիս 16-ին եւ ձօնուած Տամատեան ընտանիքին:

Այս երկու մանրանուագները Քուկէլի սակաւաթիւ ստեղծագործութիւններէն են՝ որոնք վեր կը հանեն երաժշտահանին ներքին, մեղմօրօր հոգեւոր աշխարհը: Չկան բարձրագոչ, հրաբորբոք ամբարձումները: Միաժամանակ, սակայն, դաշնակումի անընդհատ շարժումը, մշտանորոգ շեղումներն ու զարտուղութիւնները (modulations), ընթացքի (tempo) անկայունութիւնը, միշտ կը մատնեն անհանգիստ խառնուածքով տէր հեղինակը: Վերջին կէտը համեմատաբար աւելի որոշակիօրէն ընդգծուած է «Յուշ»-ին մէջ՝ քանի որ ամբողջովին ինքնուրոյն յղացում մըն է: «Chanson arménienne»-ին մէջ երաժշտահանը կապուած է *Կուժն առա* գեղջկական երգի հիմնանիւթին հետ՝ զոր գրեթէ պահպանած է անփոփոխ: Պատրաստ մեղեդին, այլեւ մէկ ձեռքի գործածութիւնը, մասամբ կաշկանդած են Քուկէլի եռանդուն բնաւորութեան ազատատենչ թռիչքները, սակայն միաժամանակ առիթ ընձեռած ի յայտ բերելու երաժշտահանին արհեստավարժական կատարելութիւնը՝ նըրբօրէն եւ հարազատօրէն մշակելու փոքրիկ, ընդամէնը չորս ձայնանիշէ բաղկացած մեղմազդեցիկ մեղեդի մը:

Ինքնագիր ձեռագիրը մինչեւ այսօր ի պահ կը մնայ Նուարդ Տամատեանի անձնական դիւանին մէջ: Գրուած է սեւաթանաք, կազմուած է երկու թերթէ, մեծութիւնն է 31.4×25.6 սմ.: Կը տպագրուի առաջին անգամ:

# DANSE ARMÉNIENNE

Տպագրուած է 1950-ին, Փարիզի Gallet et Fils հրատարակչատան կողմէ: Այստեղ Արքատի Քուկէլն է՝ իրեն յատուկ ազդեցիկ արտայայտչականութեամբ: Սրընթացութեան հետ հեշտասահութիւն, կորովութեան հետ քաղցրութիւն, հիւսուածքային ու դաշնեակային (accord) լիցքաւորումին հետ խոր երգայնութիւն, միաչունչ, մեծաթափ զարգացում, ահա ստեղծագործութիւնը բնորոշող քանի մը յատկանիշ: *Danse arménienne*-ին այս երկրորդ տպագրութիւնը, յոյսով ենք, կ’արժանանայ դաշնակահարներուն ուշադրութեան:

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

2.- Նուարդ Տամատեանի մասին *տե՛ս* մեր յօդուածը՝ «Նուարդ Տամատեան՝ մանկավարժուհի եւ դաշնակահարուհի» (արաբերէն), *Արեւ* օրաթերթի արաբերէն միամսեայ յաւելուած, Գահիրէ, Նոյեմբեր 1998:

*Avec mon profond respect à la famille Damadian*

# DEUX PAGES D'ALBUM

## 1.- SOUVENIR

ARKADIE KOUGUELL
1933

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

| | Էջ |
|---|---|
| Շնորհակալիք | I |
| Ներածութիւն | III |
| ԲՆԱԳԻՐՆԵՐ | 1 |
| Deux pages d'album | 3 |
| Danse Arménienne | 5 |

Գաhիրէի Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան «Սաքենիկ Ճ. Չագըր հիմնադրամ»-ը՝ Հայկ Աւագեանի խմբագրութեամբ եւ ծանօթագրութեամբ լոյս ընծայած է հետեւեալ երաժշտական հատորները.

1.-**Տիգրան Չուհաճեան,** *Սուրբ, սուրբ,* քառերգի եւ սենեկային նուագախումբի համար եւ *Հայր մեր,* սոփրանոյի, ալթոյի, խգական երգչախումբի եւ սենեկային նուագախումբի համար, Գահիրէ, 1999 (74 էջ)

2.-**Տիգրան Չուհաճեան,** *Արշակ Բ.,* օփերա չորս արարով, իտալերէն լիպրեթթոյով, Գահիրէ, 2000

ա.-Դաշնակի եւ երգի համար (vocal score) (440 էջ)
բ.-Նուագագրութիւն (orchestral score) (804 էջ)
գ.-Առանձին նուագարաններ՝ կազմուած 24 հատորէ (1549 էջ)

3.-**Տիգրան Չուհաճեան,** *Աւէ Մարիա,* տարբերակներ, Գահիրէ, 2000 (82 էջ)

4.-**Տիգրան Չուհաճեան,** *Կաւոլթ,* ջութակի, թաւ ջութակի, դաշնակի եւ հարմոնիումի համար եւ *Զորս ֆիւկ,* լարային եռանուագի եւ քառանուագի համար, Գահիրէ, 2000 (52 էջ)

5.-**Քրիստափոր Կարա-Մուրզա,** *Դաշնակի ստեղծագործութիւններ,* Գահիրէ, 2000 (34 էջ)

6.-**Մակար Եկմալեան,** *Դաշնակի ստեղծագործութիւններ,* Գահիրէ, 2000 (54 էջ)

7.-**Ալեքսանդր Սպենդիարեան,** *Գուշակուհին,* քառաձեռն դաշնակի համար, Գահիրէ, 2000 (22 էջ)

# أركادي كوجيل

## صفحات من ألبوم
## رقصة أرمنية
### للبيانو

التحرير الموسيقي والتعليقات
هايج أفاكيان

القاهرة
٢٠٠٠